Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿՊ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ







№ 19 ՀՈԿՏԵՄԲԵՐ 1955

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ




Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿՊ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:






# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 38-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ

*38 տարի առաջ, 1917 թվականի հոկտեմբերին մեր երկրի բանվոր դասակարգը, չքավոր գյուղացիության հետ դաշինք կնքած, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, մեծ Լենինի գլխավորությամբ, ճեղքեց իմպերիալիզմի ճակատը երկրագնդի մեկ վեցերորդ մասում, տապալեց կալվածատերերի ու բուրժուազիայի իշխանությունը և մեր երկրում հաստատեց պրոլետարիատի դիկտատուրա։*

*Սովետական ժողովուրդը, Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ, պատմության մեջ առաջին անգամ կառուցեց սոցիալիստական հասարակարգ և հաջողությամբ իրականացնում է կոմունիստական շինարարության մեծ ծրագիրը։ Մեծ հոկտեմբերի գծած ուղիով, Սովետական Միության հետ միասին ընթանում են չին մեծ ժողովուրդը, Եվրոպայի և Ասիայի ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։*





Սովետական ժողովուրդը Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը նշում է տնտեսական և կուլտուրական շինարարության բոլոր բնագավառներում ձեռք բերած մեծ հաջողությունների, Սովետական պետության միջազգային հեղինակության հսկայական աճման, սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի ուժերի է՛լ ավելի ամրապնդման պայմաններում։

ՍՄԿԿ 19-րդ համագումարից հետո անցած տարիներին մեր երկրի արդյունաբերությունը զգալի հաջողություններ է ձեռք բերել։ Սովետական մարդկանց ուրախացնում են մեր ամբողջ ժողովրդական տնտեսության արագ զարգացման, աշխատավորների բարեկեցության անշեղ աճի և երկրի պաշտպանական հզորության ամրապնդման հիմքը հանդիսացող ծանր արդյունաբերության խոշոր հաջողությունները։ Հաճելի և բերկրալի է իմանալ, որ 5-րդ հնգամյա պլանը արդյունաբերական արտադրության ծավալի գծով կատարվել է մինչև 1955 թվականի մայիսի 1-ը, այսինքն 4 տարի 4 ամսում։ Դա սովետական ժողովրդի նոր մեծ հաղթանակն է ՍՍՌՄ տնտեսական հզորության ամրապնդման, աշխատավորների բարեկեցության բարձրացման, երկրի պաշտպանունակության ամրապնդ-



ման գործում, դեպի կոմունիզմ մեր երկրի հետագա առաջընթացի համար մղվող պայքարում։

Համախառն արտադրանքի արտադրության առաջին կիսամյակի պլանը, ամբողջությամբ վերցրած, արդյունաբերությունը կատարել է 103 տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1955 թվականի 1-ին կիսամյակում, անցյալ տարվա համապատասխան ժամանակաշրջանի համեմատությամբ, աճել է 12 տոկոսով։ Ընթացիկ տարվա վերջին, 1950 թվականի համեմատությամբ, արտադրության միջոցների արտադրությունը կաճի առնվազն 84 տոկոսով և կկազմի ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերական արտադրանքի ավելի քան 70 տոկոսը։

1955 թվականին կարտադրվի ավելի քան 33 միլիոն տոննա չուգուն, մոտ 45 միլիոն տոննա պողպատ, 166 միլիարդ կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, կարդյունահանվի 70 միլիոն տոննա նավթ, ավելի քան 390 միլիոն տոննա ածուխ։ Վերջին 25 տարում արդյունաբերական արտադրանքի տարեկան միջին աճը (չհաշված պատերազմի տարիները) ՍՍՌՄ-ում կազմել է 18,2 տոկոս, իսկ ԱՄՆ-ում՝ 2,4 տոկոս, Անգլիայում՝ 3,6 տո-

կոս, Ֆրանսիայում՝ 2,1 տոկոս։ Սովետական Միության թշնամիներն անգամ հարկադրված են ընդունել սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման գործում ՍՍՌՄ ձեռք բերած նվաճումները։

Հետպատերազմյան ժամանակաշրջանի մեծագույն նվաճումներից է հզոր հիդրոէլեկտրակայանների կառուցումը Կույբիշևում, Ստալինգրադում, ինչպես նաև Սիբիրի գետերի վրա։ Երկրում կառուցվող հիդրոկայանների հզորությունը գրեթե 3 անգամ գերազանցում է 1954 թվականի սկզբին գործող բոլոր հիդրոկայանների հզորությանը։

Անշեղորեն զարգանում է սոցիալիստական ինդուստրիայի միջուկը հանդիսացող հայրենական մեքենաշինությունը։ Մեքենաշինության արտադրանքի ընդհանուր ծավալը, 1950 թվականի համեմատությամբ, 1955 թվականի վերջին ավելանալու է ավելի քան 2 անգամ, իսկ 1940 թվականի հետ համեմատած՝ 4,6 անգամ։ Այդ բոլորը վկայում են այն մասին, որ Կոմունիստական պարտիան հետևողականորեն և հաստատակամորեն վարել և վարում է ծանր ինդուստրիայի առաջնահերթ զարգացման լենինյան գիծը։

Նոր տեխնիկայի վիթխարի աճի մասին է վկայում այն փաստը, որ այժմ մեզ մոտ



մեկ տարվա ընթացքում ավելի շատ մեքենաներ, սարքավորումներ, մեխանիզմներ են արտադրվում, քան արտադրվել է առաջին և երկրորդ հնգամյակների տարիներին՝ միասին վերցրած։ Հետպատերազմյան տարիներին մեր մեքենաշինությունը տարեկան յուրացրել է 600—700 նոր, բարձր արտադրողական մեքենաներ և մեխանիզմներ։

Սովետական գիտնականների և ինժեներների ջանքերով հաջողությամբ լուծվում են խաղաղ նպատակներով ատոմային էներգիայի օգտագործման խնդիրները, ստեղծված է ատոմային էներգիայով աշխատող՝ աշխարհում առաջին էլեկտրակայանը։ Արտադրության մեջ արմատավորվում են ավտոմատիկայի, տելեմեխանիկայի, ռադիոտեխնիկայի և էլեկտրոնիկայի նորագույն նվաճումները։

Մեր երկրում առանձնահատուկ ուշադրություն է դարձվում աշխատանքի արտադրողականության բարձրացման հարցերին, որը հանդիսանում է ամբողջ ժողովրդական տնտեսության հետագա զարգացման վճռական պայմաններից մեկը։ 1955 թվականի առաջին կիսամյակում, 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ, աշխատանքի արտադրողականությունը արդյունաբերու-

թյան մեջ աճել է 7 տոկոսով, շինարարության մեջ՝ 10 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականության բարձրացումը արդյունաբերության մեջ, 1940 թվականի համեմատությամբ, 1955 թվականին աճել է մոտ 2 անգամ։ Այդ հիման վրա բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը արդյունաբերության մեջ, նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 90 տոկոսով։ Այս բոլոր հաջողությունները վկայում են ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության զարգացման 1951—1955 թվականների հնգամյա պլանի առաջադրանքների հաջող կատարման մասին։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը մեր երկրի աշխատավորները տոնում են սոցիալիստական գյուղատնտեսության նոր, հզոր վերելքի պայմաններում։

Վերջին երկու տարում պարտիայի Կենտրոնական Կոմիտեն հսկայական ուշադրություն է նվիրել և նվիրում գյուղատնտեսական արտադրության ընդլայնման հարցերին։

Ամենայն սրությամբ և խստությամբ բացահայտելով գյուղատնտեսության մի շարք ճյուղերի ետ մնալը և բարձիթողի վիճակը, պարտիայի Կենտկոմը նշել և հետևողակա-



նորեն իրագործում է սոցիալիստական գյուղատնտեսության շեշտակի վերելքի խոշորագույն միջոցառումները։

Այժմ սովետական ժողովուրդը պայքարում է հացահատիկի արտադրությունը տարեկան առնվազը 10 միլիարդ փթի հասցնելու և անասնաբուծական հիմնական մթերքների արտադրությունը երկու, երկուս ու կեսից ավելի անգամ մեծացնելու վերաբերյալ ՍՄԿՊ Կենտկոմի Հունվարյան պլենումի առաջադրած խնդիրները ժամկետից շուտ կատարելու համար։ Առաջավոր կոլտնտեսությունների, սովխոզների փորձը համոզեցուցիչ կերպով ցույց է տալիս, որ այդ խնդիրները կարող են լուծվել ոչ թե 6 տարում, այլ մոտակա երկու—երեք տարում։

Գյուղատնտեսության վերաբերյալ պարտիայի ընդունած որոշումների իրականացման համար պայքարը դարձել է իրոք համաժողովրդական գործ և արդեն շոշափելի արդյունքներ է տվել։ Երկրում ցանված են 21 միլիոն հեկտարով ավելի գարնանացան կուլտուրաներ, այդ թվում 11 միլիոն հեկտարով ավելի ցորեն, քան անցյալ տարի, եգիպտացորեն ցանված է 17,9 միլիոն հեկտար, կամ 13,6 միլիոն հեկտարով ավելի, քան անցյալ տարի։ Երկարաթել վուշ ցանվել է անցյալ

տարվանից մոտավորապես 360 հազար հեկտարով ավելի, շաքարի ճակնդեղ՝ 180 հազար, արևածաղիկ՝ 360 հազար, կարտոֆիլ՝ 330 հազար հեկտարով ավելի։

ՄՏ կայանները և սովխոզները 1954 թվականին և 1955 թվականի առաջին կիսամյակում հերկել են ավելի քան 26 միլիոն հեկտար խոպան և խամ հողեր, որոնցից ցանված է 20 միլիոն հեկտարը, 1955 թվականի պլանով նախատեսված 13 միլիոն հեկտարի փոխարեն։

Խոպան ու խամ հողերի յուրացման շրջաններում ընթացիկ տարվա գարնանը ստեղծված է 300 նոր հացահատիկային սովխոզ, բացի այն, որ 1954 թվականին կազմակերպված էր 124 սովխոզ։ Ընթացիկ տարում սոցիալիստական գյուղատնտեսության աշխատավորները անձնուրաց աշխատանքով աճեցրել և հաջողությամբ հավաքում են գյուղատնտեսական կուլտուրաների առատ բերքը։

Զգալիորեն աճել է գյուղատնտեսության տեխնիկական հագեցվածությունը։ 1955 թվականի առաջին կիսամյակում գյուղատնտեսությունը ստացել է ընդհանուր գործածության 79 հազար տրակտոր (15 ուժանոցի վերածած) և հեռաշար մշակության 31,5 հազար տրակտոր, 58 հազար բեռնատար ավ-



տոմոբիլ, 21 հազար հացահատիկային կոմբայն, 9 հազար կարտոֆիլահավաք կոմբայն, շաքարի ճակնդեղ հավաքող 3 հազար կոմբայն, 48 հազար տրակտորային գութան, 59 հազար տրակտորային շարքացան, 12 հազար կարտոֆիլատնկիչ, 48 հազար տրակտորային կուլտիվատոր և շատ այլ գյուղատնտեսական մեքենաներ։

Եթե 1940 թվականի վերջին գյուղատնտեսության մեջ հաշվվում էր 684 հազար տրակտոր, ապա տրակտորների թիվը 1955 թվականին հասավ ավելի քան մեկ միլիոն 400 հազարի, հացահատիկային կոմբայններինը՝ 182 հազարից՝ 350 հազարի, բեռնատար ավտոմեքենաներինը՝ 228 հազարից՝ ավելի քան 450 հազարի։ Մեքենա-տրակտորային կայանները 1955 թվականի առաջին կիսամյակում կոլտնտեսություններում կատարել են վարի փոխադրած 295 միլիոն հեկտարով ավելի գյուղատնտեսական աշխատանքներ, քան անցյալ տարի նույն ժամանակաշրջանում։ Ավելացել է անասնաբուծական մթերքների արտադրությունը։ Ինն ամսում՝ 1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հուլիսի 1-ը, կոլտնտեսություններում կթվել է 28 տոկոսով ավելի կաթ, քան 1953—1954 թվականի նույն ժամանակաշր-

ջանում և 52 տոկոսով ավելի, քան 1952—1953 թվականին։ Կոլտնտեսություններում, 1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հուլիսի 1-ը, 1953—1954 թվականի նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մեկ կովի կաթնատվությունը ավելացել է 17 տոկոսով։ Այդ ժամանակաշրջանում ավելացել է նաև մսի, բրդի, ձվի արտադրությունը։

Կոլտնտեսություններում հանրային անասունների գլխաքանակը առ 1-ը հուլիսի 1955 թվականի, 1954 թվականի հուլիսի 1-ի համեմատությամբ, ավելացել է կովերինը՝ 7 տոկոսով և ոչխարներինը՝ 4 տոկոսով, ավելացել է բնակչության անձնական սեփականություն հանդիսացող կովերի և մանր անասունների գլխաքանակը։ Այս բոլոր հաջողությունները գյուղատնտեսության հետագա վերելքի ուղղությամբ՝ պարտիայի կազմակերպական աշխատանքի, մեր երկրի բանվորների, կոլտնտեսականների, ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքի արդյունքն են։

Ժողովրդական սպառման ապրանքների արտադրության մակարդակը 1955 թվականին 1950 թվականի մակարդակը կգերազանցի 72 տոկոսով՝ հինգերորդ հնգամյա պլանով նախատեսված 65 տոկոսի դիմաց։



1955 թվականի առաջին կիսամյակի ընթացքում մեծ չափերով ավելացել է նաև արդյունաբերական և պարենային ապրանքների վաճառքը։

Արտաքին առևտրի ասպարեզում Սովետական Միությունը 1955 թվականին շարունակում է ընդլայնել տնտեսական կապերը արտասահմանյան երկրների հետ։ Ներկայումս Սովետական Միությունը առևտուր է կատարում օտարերկրյա 58 պետությունների հետ։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը ամենօրյա հոգատարություն են ցուցաբերում սոցիալիստական կուլտուրայի ծաղկման, աշխատավորների բնակարանային, կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման, ժողովրդական կրթության, գիտության, գրականության, արվեստի հետագա զարգացման նկատմամբ։

Մեր երկրում անշեղորեն ծավալվում է միջնակարգ կրթությունը։ Քաղաքներում և գյուղական վայրերում շարունակվում է ընդլայնվել միջնակարգ դպրոցների ցանցը։ 5-րդ հնգամյակի տարիներին միջնակարգ դպրոցների թիվը ավելացել է 13 հազարով։ Ընթացիկ տարում, անցյալ տարվա համեմատությամբ, միջնակարգ դպրոցն ավարտածների և հասունության ատեստատ ստացածների

Թիվը ավելացել է 25 տոկոսով, իսկ 1950 թվականի համեմատությամբ՝ երեք և կես անգամ։

ՍՍՌՄ-ում ստեղծվել է ԲՈՒՀ-երի լայն ցանց, որտեղ սովորում են բանվորների, գյուղացիների, սովետական ինտելիգենցիայի զավակները։ Ընթացիկ տարում բարձրագույն ուսումնական հաստատությունները և տեխնիկումները երկրին տվել են ավելի քան 640 հազար երիտասարդ մասնագետներ, կամ գրեթե 80 տոկոսով ավելի, քան անցյալ տարի։

Սովետական Միության ժողովուրդների համերաշխ ընտանիքում Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը նշանակալից հաջողություններով է դիմավորում նաև Սովետական Հայաստանի աշխատավորությունը։

Առանձնապես մեծ են ռեսպուբլիկայի հաջողությունները արդյունաբերության զարգացման բնագավառում։ Հայկական ՍՍՌ արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը, 1950 թվականի համեմատությամբ, 1954 թվականին աճել է 79,4 տոկոսով, իսկ նախապատերազմյան 1940 թվականի համեմատությամբ՝ 4,5 անգամ։ Արդյունաբերական արտադրանքի թողարկման 1955 թվա-



կանի առաջին կիսամյակի պլանը կատարվել է 105 տոկոսով։ 1954 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ արդյունաբերության համախառն արտադրանքն աճել է 14 տոկոսով, աշխատանքի արտադրողականությունը բարձրացել է 9 տոկոսով։

Հնգամյակի ընթացիկ եզրափակիչ տարում արդյունաբերական արտադրանքի ծավալը 1950 թվականի մակարդակը կգերազանցի 2 անգամ։ Դրա հետ միասին ապահովվում են ծանր արդյունաբերության զարգացման արագ տեմպերը։ Վերջին 4 տարում ծանր արդյունաբերության արտադրանքը աճել է գրեթե 2 և կես անգամ, այդ թվում մեքենաշինության արտադրանքը՝ 2,7 անգամ։

Մեծ չափով աճել է էլեկտրաէներգիայի արտադրությունը։ Հայաստանի էլեկտրակայանները այժմ 320 անգամ ավելի էներգիա են արտադրում, քան 1913 թվականին։ Ընդլայնվում և զարգանում են գունավոր մետալուրգիան, քիմիական և շինանյութերի արդյունաբերությունը։ Հինգերորդ հնգամյակի տարիներին կառուցվել և շահագործման են հանձնվել 63 նոր խոշոր ձեռնարկություններ, այդ թվում՝ Գյումուշի և Ջրախորի հիդրոէլեկտրակայանները, Երևանի էլեկտրալամպերի, Արարատի Ազբոշիֆերի, Թուման-

յանի հրակայուն աղյուսի գործարանները և ուրիշ ձեռնարկություններ։

Աճել է ռեսպուբլիկայի ծանր արդյունաբերության ձեռնարկությունների արտադրանքը։ Տարեցտարի նրանք երկրին տալիս են ավելի շատ ալյումին, պղինձ, մետաղահատ հաստոցներ, կոմպրեսորներ, շրջիկ էլեկտրակայաններ, արտադրում ավելի շատ ցեմենտ և այլ շինանյութեր, զգալիորեն ավելացնում են լայն սպառման արդյունաբերական ապրանքների և սննդամթերքների արտադրությունը։

Ընթացիկ տարվա առաջին կիսամյակի ընթացքում Հայկական ՍՍՌ Լայն սպառման ապրանքների արդյունաբերության մինիստրության ձեռնարկությունները պլանից ավելի թողարկել են 15,8 միլիոն ռուբլու արտադրանք։ Վեց ամսում լրացուցիչ արտադրվել է 34 հազար մետր բրդյա, 67 հազար մետր մետաքսյա գործվածք, 37 հազար կտոր տրիկոտաժի վերնազգեստ, 30 հազար զույգ կոշիկ, 31 հազար քառակուսի դեցիմետր փափուկ կաշի, 7.500 տղամարդու կոստյում և այլն։ Աշխատանքի արտադրողականությունը այդ նույն ժամանակամիջոցում բարձրացել է 4,2 տոկոսով։

Զգալի հաջողություններ է ձեռք բերել ռես-



պուբլիկայի գյուղատնտեսությունը։ Հացահատիկային կուլտուրաների ցանքի պլանը գերակատարվել է։ Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ցանվել է ավելի քան 13 հազար հեկտար եգիպտացորեն, ՄՏ կայաններում ավելացել է հացահատիկային կոմբայնների, տրակտորային շարքացանների, բերքահավաքի մեքենաների և կերի պատրաստման մեքենաների քանակը։ Ավելացել է անասունների գլխաքանակը և բարձրացել նրանց մթերատվությունը։ Կոլտնտեսություններում, 1954 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1955 թվականի հուլիսի 1-ը, 40 տոկոսով ավելի շատ կաթ է կթված, քան 1953/1954 թվականի նույն ժամանակաշրջանում։ Մեկ կովից կթված կաթի միջին քանակն ավելացել է 31 տոկոսով։ Այս տարվա առաջին կիսամյակում, անցյալ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, մթերված և գնված է միս 19 տոկոսով ավելի, կաթ՝ 31 տոկոսով ավելի, ձու՝ 24 տոկոսով ավելի և բուրդ՝ 31 տոկոսով ավելի։

Մեծ են հայ ժողովրդի նվաճումները գիտության, կուլտուրայի զարգացման ասպարեզում։ Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի կազմում հաշվվում է մի քանի տասնյակ գիտա-հետազոտական ինստի-

տուտ և գիտական աշխատողների մեծ կոլեկտիվ։ Ռեսպուբլիկան ունի 20 բարձրագույն ուսումնական հաստատություն, այդ թվում՝ 8-ը հեռակա, ուր սովորում է ավելի քան 18 հազար ուսանող։ Դպրոցների թիվը կազմում է 1.177, որտեղ սովորում է մոտ 300 հազար երեխա։

1954—1955 ուսումնական տարում, միջնակարգ դպրոցների աճման հետ միասին, 8—10-րդ դասարանների աշակերտների թիվը ավելացել է 15 տոկոսով, աճել է մանկապարտեզների ու մանկամսուրների քանակը, ընդարձակվել է մասսայական գրադարանների, ակումբների և կինոսարքավորումների ցանցը։

Հայ ժողովուրդն ունի իր օպերան, շատ դրամատիկ թատրոններ, կինոստուդիա, հազարավոր կուլտուր-լուսավորական հիմնարկներ։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը տնտեսության և կուլտուրայի զարգացման գործում ձեռք բերած մեծագույն հաջողություններով են դիմավորում սոցիալիզմի ուղին թևակոխած և իրենց նոր, ազատ կյանքը կերտող ժողովրդական դեմոկրատիայի երկրները։

Հենվելով Սովետական Միության եղբայ-



րական, անշահախնդիր օգնության և փոխադարձ տնտեսական համագործակցության վրա, Եվրոպայի ժողովրդական դեմոկրատիայի երկրներում սկսվել է սոցիալիստական ինդուստրայի զարգացման մեծ պլանի իրագործումը, որի հետևանքով ռևոլյուցիոն մի շարք վերափոխություններ են կատարվել այդ երկրների սոցիալ-տնտեսական կառուցվածքի մեջ։ Այսպես, օրինակ, սոցիալիստական կացութաձևի բաժինը 1953 թվականին Չեխոսլովակիայում կազմել է արդյունաբերության մեջ՝ 99,6 տոկոս, շինարարությունում՝ 99,8 տոկոս, տրանսպորտում՝ 100 տոկոս, բանկային գործի մեջ՝ 100 տոկոս, գյուղատնտեսության մեջ՝ 45,4 տոկոս։

1952 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ սոցիալիստական կացութաձևի բաժինը կազմել է՝ Լեհաստանում մոտ 99 տոկոս, Հունգարիայում՝ 97 տոկոս, Ռումինիայում՝ 95 տոկոս, Բուլղարիայում՝ 98 տոկոս։ Մեծածախ առևտրի մեջ սոցիալիստական կացութաձևի բաժինը Եվրոպայի բոլոր ժողովրդական դեմոկրատիայի երկրներում կազմել է 100 տոկոս։

Այս տվյալները ցույց են տալիս, որ ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում սոցիալիստական կացութաձևը արդեն

առաջատար դեր է խաղում և գերակշռող տեղ է գրավում էկոնոմիկայի մեջ։

Արդյունաբերական արտադրանքի վիթխարի աճի մասին են վկայում հետևյալ տվյալները. եթե 1948 թվականը վերցնենք 100, ապա 1953 թվականին Լեհաստանում այն կազմել է 282, Չեխոսլովակիայում՝ 202, Հունգարիայում 345, Ռումինիայում՝ 348, Բուլղարիայում՝ 252, ԳԴՌ-ում՝ 243։ Ալբանիայում 1954 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքը, 1949 թվականի համեմատությամբ, ավելացել է ավելի քան 11 անգամ, Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայում՝ 4 անգամ։

ՉԺՌ-ում, ժողովրդական իշխանության 5 տարիներին արտադրության միջոցների արտադրությունը աճել է 5,7 անգամ, իսկ ժողովրդական սպառման առարկաների արտադրությունը՝ ավելի քան 3 անգամ։

Առաջին հնգամյա պլանով նախատեսված է Չինաստանում կառուցել 694 խոշորագույն արդյունաբերական ձեռնարկություն, 15 նոր ջերմէլեկտրակայան՝ յուրաքանչյուրը 50.000 կիլովատ ժամ կարողությամբ, յուրացվելու է մեքենաների, ինքնաթիռների, ավտոմեքենաների, տրակտորների սեփական արտադրությունը։



Վերելքի ուղիով է ընթանում նաև Չինաստանի գյուղատնտեսությունը։ 1953 թվականին հացահատիկի համախառն բերքը եղել է ամենաբարձրը երկրի պատմության մեջ՝ 165 միլիոն տոննա. բամբակի արտադրությունը 1954 թվականին 2,8 անգամ ավելի էր, քան 1949 թվականին։ Արագ տեմպերով է զարգանում անասնաբուծությունը։ 1954 թվականի սկզբին կովերի գլխաքանակը, 1949 թվականի համեմատությամբ, ավելացել է 47 տոկոսով, ձիերինը՝ 36 տոկոսով, իսկ ոչխարներինը՝ 76 տոկոսով։

Լեհաստանում բնակչության մեկ շնչին ընկնող գյուղատնտեսական մթերքների ծավալը այժմ 38 տոկոսով գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Չեխոսլովակիայում առաջին հնգամյակի տարիներին հացահատիկի համախառն բերքը կավելանա 5 տոկոսով, կարտոֆիլինը՝ 30 տոկոսով, շաքարի ճակնդեղինը՝ 27 տոկոսով, վուշինը՝ 154 տոկոսկով։ Խոշոր եղջերավոր անասունների գլխաքանակը այդ նույն ժամանակաշրջանում կավելանա 11 տոկոսով, խոզերինը՝ 29 տոկոսով, ոչխարներինը՝ ավելի քան 2 անգամ։ Բուլղարիայում հացահատիկի արտադրությունը, 1939 թվականի համեմատությամբ, 1953 թվականին 17 տոկոսով ավե-

լացավ, իսկ տեխնիկական կուլտուրաներինը՝ 59 տոկոսով։

Ազգային եկամուտը ժողովրդական դեմոկրատիայի երկրներում ներկայումս ավելի քան 2 անգամ գերազանցում է նախապատերազմյան մակարդակը։ Կիովին և ընդմիշտ վերջ է տրված գործազրկությանը։ Անշեղորեն բարձրանում է բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը, ավելանում են գյուղացիների եկամուտները։

Ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկրներում տեղի է ունենում իսկական կուլտուրական ռեվոլյուցիա։ Վերջին տարիներին զգալիորեն աճել է դպրոցների և բուհերի թիվը։ 1953/54 ուստարում ՉԺՌ-ում հաշվվում էր 55 միլիոն սովորող։ Չեխոսլովակիայում այժմ կա 39 բուհ, որտեղ 2 անգամ ավելի սովորողներ կան, քան նախապատերազմյան տարիներին։ Բուլղարիայի 20 բուհերում սովորում է 30.000 մարդ։ Լեհաստանում բուհերի թիվը եռապատկվել է։

Բուռն վերելք է ապրում գիտությունը և կուլտուրան։

Հոկտեմբերյան Սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի 38-րդ տարեդարձը ահա այսպես են դիմավորում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների աշխատավորները։

---

# ՊՐՈՖՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՇԽԱՐՀԱՅԻՆ ՖԵԴԵՐԱՑԻԱՆ

## (Ստեղծման 10-ամյակի կապակցությամբ)

### ԱՂ. ԵՍԱՅԱՆ

Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան մեկն է միջազգային այն դեմոկրատական կազմակերպություններից, որոնք միավորում են աշխատավորներին՝ նրանց դեմոկրատական իրավունքների ու ազատությունների, խաղաղության համար մղվող պայքարը կազմակերպելու ու գլխավորելու համար։

Ֆաշիզմի դեմ մղվող համաժողովրդական մեծ պայքարում իր ծիլերն առավ ու ամրապնդվեց համաշխարհային բանվորական և պրոֆմիութենական միասնությունը։ Երկրորդ համաշխարհային պատերազմը բոլոր աշխատավորներին համոզեց, որ իրենց կենսական շահերի պաշտպանման համար, աշխարհը նոր ավերիչ պատերազմներից փրկելու համար անհրաժեշտ է բոլոր երկրների աշխա-

տավորների ուժերը միավորել մեկ հզոր և մարտունակ միջազգային կազմակերպության մեջ։ Այս գործում իրենց առաջատար դերը խաղացին սովետական պրոֆմիությունները։ Անգլո-սովետական պրոֆմիութենական կոմիտեի չորրորդ սեսիայում սովետական պրոֆմիութենական դելեգացիային հաջողվեց հասնել համաձայնության համաշխարհային պրոֆմիութենական կոնֆերանս հրավիրելու մասին, որը տեղի ունեցավ Լոնդոնում 1945 թվականի փետրվարի 6—17-ը։ Այս կոնֆերանսում ստեղծված նախապատրաստական կոմիտեն 1945 թվականի սեպտեմբեր-հոկտեմբեր ամիսներին Փարիզում հրավիրեց Պրոֆմիությունների առաջին Համաշխարհային Կոնգրեսը (Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի (ՊՀՖ) սահմանադիր կոնգրեսը), որտեղ և հիմնադրվեց ՊՀՖ-ն։

Կոնգրեսը միաձայն ընդունեց ՊՀՖ-ի կանոնադրությունը։ ՊՀՖ-ի կանոնադրության համաձայն նրա գերագույն օրգանն է Պրոֆմիությունների Համաշխարհային կոնգրեսը, որը կազմված է ՊՀՖ-ի մեջ մտնող բոլոր պրոֆ-կազմակերպությունների պատվիրակներից։ Կոնգրեսը հրավիրվում է երկու տարին մեկ անգամ։



ՊՀՖ-ի ղեկավար օրգաններն են նաև Գլխավոր խորհուրդը, Գործադիր Կոմիտեն և Գործադիր Բյուրոն։ Այս և մյուս օրգանների ֆունկցիաները սահմանված են կազմակերպության կանոնադրությամբ։

Որպես պրոֆմիությունների միջազգային դեմոկրատական միավորում, ՊՀՖ-ն ընդգրկեց աշխարհի 56 երկրների պրոֆմիություններում կազմակերպված 67 միլիոն բանվորների, անկախ նրանց փիլիսոփայական, քաղաքական և կրոնական հայացքներից։

ՊՀՖ-ն գործում է, ելնելով բոլոր երկրների պրոֆմիություններում լիակատար դեմոկրատիայի սկզբունքներից։ Նա ելնում է այն բանից, որ բոլոր երկրների պրոֆեսիոնալ կազմակերպությունները պետք է լինեն սերտ համագործակցության մեջ, ինքը պետք է մշտական կապերի մեջ գտնվի կազմակերպության մեջ մտնող պրոֆմիությունների հետ, եղբայրական աջակցություն և օգնություն ցույց տա նրանց, կազմակերպի պրոֆմիութենական աշխատանքի սիստեմատիկ ինֆորմացիա՝ միջազգային բանվորական շարժման համերաշխությունն ամրապնդելու համար և այլն։

Անցած տասը տարիների ընթացքում

Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան հսկայական աշխատանք է կատարել խաղաղության ու դեմոկրատիայի համար խաղաղասեր ժողովուրդների մղած պայքարի մեծ գործում։ Նա անդուլ կերպով մերկացրել է պատերազմի հրձիգների դիտավորությունները և եղել է այն միջազգային դեմոկրատական կազմակերպությունների լագերում, որոնք միավորել են ամբողջ աշխարհի խաղաղասեր ժողովուրդների ջանքերը երրորդ համաշխարհային պատերազմի սանձազերծումը անհնարին դարձնելու համար։ Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի տասնամյա բեղմնավոր գործունեության մեջ մեծ տեղ է գրավել կապիտալիստական ու գաղութային երկրների աշխատավորների կյանքի պայմանները լավացնելու համար մղվող պայքարը։ Նա համերաշխել ու աջակցել է իրենց արդարացի պահանջների համար գործադուլի դիմած կապիտալիստական երկրների միլիոնավոր բանվորների։

Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան անողոքաբար մերկացրել է կապիտալիստական մեծ պետությունների կողմից թույլ և չզարգացած երկրներին տնտեսապես, ֆինանսապես կեղեքելու ու սարկաց-



նելու քաղաքականությունը։ Նա հանդես է եկել կապիտալիստական պետությունների կողմից ստեղծվող ռազմական խմբավորումների դեմ՝ ինչպիսիք են Արևմտյան դաշինքը, Հյուսիս-ատլանտյան բլոկը, Թյուրք-պակիստանյան ռազմական պակտը և այլն։ ՊՀՖ-ն առանձնահատուկ եռանդով գործել է Արևմտյան Գերմանիայի վերառազմականացման դեմ, Փարիզի ու Լոնդոնի համաձայնագրերի դեմ, որոնք եզրափակեցին գերմանական միլիտարիզմի վերականգնման ուղղությամբ արևմտյան տերությունների կողմից երկար տարիների ընթացքում վարվող քաղաքականությունը։ ՊՀՖ-ն մեծ աշխատանք է տարել Խաղաղության Համաշխարհային Խորհրդի որոշումները կյանքում իրականացնելու ուղղությամբ։ Նաև նրա ջանքերի արդյունք է այն հանգամանքը, որ բոլոր երկրների բանվոր դասակարգը հանդես է գալիս որպես խաղաղության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարի առաջատար ուժ։

Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան եռանդուն կերպով պայքարում է, որպեսզի մարդկային մտքի մեծագույն հայտնագործությունը՝ ատոմային էներգիան օգտագործվի ի բարօրություն ամբողջ աշ-

խարհի մարդկության, խաղաղ նպատակների համար։ ՊՀՖ-ն հետևողականորեն պայքարում է ատոմային էներգիան պատերազմական նպատակների համար օգտագործելու դեմ, նա հանդես է գալիս որպես պատերազմի և մասնավորապես ատոմային պատերազմի անհաշտ թշնամի։ Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի որոշումներից մեկում ասված է, որ նա «ջերմորեն պաշտպանում է այն որոշումները, որոնք ընդունված են Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բյուրոյի ընդլայնված նիստում՝ Վիեննայում։ Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան ամբողջովին միանում է Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բյուրոյի դիմումին՝ ընդդեմ ատոմային պատերազմի նախապատրաստության»։

Պատերազմի հրձիգները, կապիտալիստական բոլոր երկրների մոնոպոլիստներն ու նրանց վարձկանները ամեն կերպ աշխատում են քայքայել բանվոր դասակարգի միջազգային միասնությունը, ջլատել նրա ուժերը, որպեսզի կապիտալիստների համար հեշտ լինի անողոքաբար շահագործել աշխատավորներին։ Այս գործում մոնոպոլիստներին օգնում են դեղին պրոֆմիությունների պա-



ռագլուխները, որոնք, վարձված լինելով կապիտալիստների կողմից, քայքայիչ աշխատանք են կատարում բանվոր դասակարգի ազգային ու միջազգային միասնության մեջ պառակտում առաջ բերելու ուղղությամբ։

ՊՀՖ-ի գոյության սկզբից այդպիսի քայքայիչ գործունեությամբ հանդես եկան Տրեդյունյոնների բրիտանական կոնգրեսի լիդերները, ԱՄՆ-ի Արտադրական պրոֆմիությունների կոնգրեսը, որոնք սկզբում մտան ՊՀՖ-ի մեջ և ապա դուրս եկան նրա կազմից, ինչպես նաև Աշխատանքի Ամերիկյան ֆեդերացիայի ղեկավարությունը, որը հրաժարվեց մտնել Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի մեջ և հանդես եկավ որպես նրա ոխերիմ թշնամի։ Չնայած իմպերիալիզմի գործակալների՝ դեղին պրոֆմիությունների ղեկավարների թշնամական դիրքին և քայքայիչ գործունեությանը, Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիայի շարքերը անցած տարիների ընթացքում գնալով ամրացել են, իսկ նրա մեջ մտնող պրոֆմիությունների անդամների թիվը աճել է։ Դեռ 1951 թվականին Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան միավորում էր բոլոր մայր ցամաքների 56 երկրների պրոֆմիություններ, որոնք ունեն 78 միլիոն անդամ։

ՊՀՖ-ի համերաշխ գործունեությունը, նրա հետևողական պայքարը հօգուտ աշխատավորների շահերի, նպաստել են նրա հեղինակության ամրապնդմանն ու աճմանը։

Բանվոր դասակարգի ուժերի միասնության ամրապնդումը շարունակվում է ինչպես միջազգային, այնպես էլ ազգային մասշտաբով։ Պառակտիչ պարագլուխների քայքայիչ գործունեությունը հանդիպում է պրոֆմիությունների շարքային անդամների աճող դիմադրությանը, որոնք իրենց կյանքի փորձով ավելի ու ավելի են համոզվում պրոֆմիութենական շարժման մեջ գոյություն ունեցող պառակտվածության անմտության և կործանարարության մեջ։ Հակառակ ԱՄՆ-ի պրոֆմիութենական բոսերի դիմադրության, ԱՄՆ-ի բազմամիլիոն բանվոր դասակարգը միավորվում է մեկ միասնական ազգային արհեստակցական միության մեջ, որը հսկայական նշանակություն կունենա բանվոր դասակարգի կողմից կազմակերպված հակահարված տալու մոնոպոլիաների օրավուր սաստկացող հակաբանվորական քաղաքականությանը, մոնոպոլիաներ, որոնք, ԱՄՆ-ի պրոֆմիություններից մեկի ղեկավարի ասելով, ձգտում են պատերազմի՝ հանուն իրենց անձնական շահերի՝ արտասահմանյան երկրներում։



Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան, արտահայտելով պրոֆմիություններում կազմակերպված միջազգային բանվոր դասակարգի կամքն ու շահերը, հանդես է գալիս ի պաշտպանություն ժողովուրդների խաղաղ գոյակցության և համագործակցության՝ անկախ նրանց մոտ եղած հասարակական-սոցիալական կարգերի։ Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան իր պայքարով օգնել ու նպաստել է խաղաղության կողմնակիցների համաշխարհային շարժման պատմական հաջողություններին։ Նա իր բաժինն ունի պայքարի այն արդյունքի մեջ, որը հանգեցրեց չորս տերությունների ղեկավարների Ժնևի հայտնի խորհրդակցությանը։

Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիան, ողջունելով Ժնևի խորհրդակցության արդյունքները, այժմ հանդես է գալիս հօգուտ նրա որոշումների հետևողական իրականացման։

Պրոֆմիություններում կազմակերպված տասնյակ միլիոնավոր աշխատավորներ ողջունում են իրենց մարտական միջազգային միավորմանը Պրոֆմիությունների Համաշխարհային ֆեդերացիային՝ բանվոր դասակարգի գործի համար նրա հետևողական պայքարի տասնամյակի առթիվ։

---

# ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ ՕԳՆԵԼՈՒ ՄԵՐ ՓՈՐՁԸ

Ս. ՇԱՀՆԱԶԱՐՅԱՆ
Կիրովականի տրիկոտաժի ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի ղեկավար

*Ագիտացիան ավելի նպատակասլաց և ավելի բովանդակալից դարձնելու գործում խոշոր նշանակություն ունի ագիտատորներին ցույց տրվող օգնությունը։ Այդ նկատառումով ֆաբրիկայի պարտկազմակերպությունը բազմաթիվ միջոցներով ու ձևերով սիստեմատիկաբար օգնություն է ցույց տալիս ագիտատորներին։ Ագիտատորներին օգնություն ցույց տալու գործում լավագույն միջոցներից մեկը սեմինար պարապմունքն է, որ մեզ մոտ հաճախակի է տեղի ունենում։ Սեմինար պարապմունքներում ագիտատորները մեթոդական օգնություն են ստանում, թե ինչպես անել, որ ունկնդիրների համար կազմակերպվող ագիտացիոն զրույցները ավելի հետաքրքիր լինեն։ Օրինակ, սեմինար պարապմունքներից մեկում պարտբյուրոյի հանձնարարությամբ քննարկվեց հետևյալ*



*հարցը՝ «Ագիտացիոն զրույցները ինչպես կապել սոցիալիստական մրցությամբ ստանձնած պարտավորությունների կատարման հետ»։ Նշված թեմայի վերաբերյալ զեկուցումով հանդես եկավ պրոֆկոմի նախագահ Ն. Կարդանյանը։ Քննարկվող հարցին ակտիվորեն մասնակցեցին ագիտատորներ Հ. Ղազարյանը, Վ. Բադոյանը, Ս. Բայրամյանը և ուրիշներ։ Ելույթ ունեցող ագիտատորները իրավացիորեն պահանջեցին ֆաբրիկայի ղեկավարությունից և հատկապես պրոֆկոմից պարբերաբար ամփոփել սոցմրցության արդյունքները և այդ մասին ժամանակին տեղյակ պահել ագիտատորներին, որպեսզի վերջիններս զրույցի ընթացքում ունկնդիրներին պարզաբանեն, թե ով ինչպես է կատարում ստանձնած պարտավորությունը, խրախուսեն մրցության առաջավորներին և օգնեն ետ մնացողներին՝ առաջավորներին հասնելու համար։*

*Հերթական սեմինար պարապմունքում ագիտատորները լսեցին ֆաբրիկայի աշխատանքի և աշխատավարձի բաժնի վարիչ Գ. Մուրադյանի զեկուցումը՝ «Ինչպես կազմակերպել զրույց աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու մասին»։ Զեկուցումից հետո ագիտատորները բազմաթիվ*

*հարցեր ավելցին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու ուղիների վերաբերյալ։ Նրանք շատ հետաքրքրվեցին հատկապես այն հարցով, թե աշխատանքի արտադրողականության բարձրացման ինչպիսի հնարավորություններ կան ֆաբրիկայում և ցեխերում։*

*— Մեր զրույցները շատ ավելի հետաքրքիր կլինեն,—ասում էին ագիտատորները,— եթե մենք բանվորներին մանրամասնորեն կարողանանք պարզաբանել, թե մեր ֆաբրիկայում ինչպիսի ներքին հնարավորություններ կան աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու համար։ Այդ գործում սեմինար պարապմունքները մեզ շատ են օգնում։*

*Իրոք, սեմինար պարապմունքում ագիտատորները բազմաթիվ փաստեր հավաքեցին աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու միջոցների, ֆաբրիկայի արտադրական կարողությունը լրիվ և արդյունավետ օգտագործելու վերաբերյալ։*

*Բացի սեմինարից, ագիտատորներին օգնություն ցույց տալու լավագույն միջոց է նաև խորհրդակցությունը։ Սովորաբար սեմինար պարապմունքներն ամսական մեկ անգամ են լինում, իսկ այդ ժամանակաշըր-*



*ջանում առաջ են գալիս շատ հրատապ հարցեր, անհրաժեշտություն է զգացվում որևէ հարց անմիջապես պարզաբանել ագիտատորներին, որպեսզի նրանք էլ այն մասսայականացնեն ֆաբրիկայի ցեխերում ու բնակչության մեջ։ Օրինակ, ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի ավարտումից անմիջապես հետո գումարեցինք ագիտատորների խորհրդակցություն, որովհետև չէինք կարող սպասել հերթական սեմինար պարապմունքի կամ այն հապճեպորեն սկսել, առանց նախապատրաստական լուրջ աշխատանք կատարելու։*

*Խորհրդակցությունում ագիտատորներին հրահանգավորում տրվեց ՍՄԿՊ Կենտկոմի Հուլիսյան պլենումի որոշումները և այդ պլենումում ընկ. Ն. Բուլգանինի տված զեկուցումը մասսայականացնելու վերաբերյալ։ Ագիտատորներին խորհուրդ տրվեց այդ կարևորագույն փաստաթղթերը մասսայականացնել խմբակային զրույցների միջոցով։ Այդպես էլ եղավ։ Ֆաբրիկայի ագիտատորները նախ արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին ՍՄԿՊ Կենտկոմի որոշման և ապա ընկեր Ն. Բուլգանինի զեկուց-*

ման շուրջ մի շարք անգամ խմբակային զրույցներ ունեցան ունկնդիրների հետ և մաս առ մաս պարզաբանեցին նրանց։ Ամեն անգամ պարապմունքի վերջում ունկնդիրները հարցեր էին տալիս և մտքերի փոխանակության կարգով ելույթ ունենում։ Արդյունքը եղավ այն, որ գրեթե բոլոր ունկնդիրները պարզ պատկերացում ունեցան սոցիալիստական արդյունաբերության հետագա զարգացման վերաբերյալ պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշման մասին։

Բազմաթիվ են ագիտատորներին օգնություն ցույց տալու ձևերը։ Սեմինար պարապմունքներ և խորհրդակցություններ հրավիրելու հետ միասին մենք ագիտատորներին սիստեմատիկաբար ապահովում ենք նաև ագիտացիոն նյութերով։ Մեզ մոտ, գործարանային ակումբում ագիտատորների զրույցի համար հավաքում ենք անհրաժեշտ նյութեր, ինչպես, օրինակ, թարմ թերթեր ամսագրեր, տեղեկագրեր, քարտեզներ, դիագրամներ և շատ հաճախ ֆաբրիկայի արտադրական պլանների կատարման վերաբերյալ փաստեր։ Ագիտացիոն այդ նյութերը ագիտատորները ցանկացած ժամանակ կարող են ստանալ գործարանի ակումբից։

Պարտկազմակերպության բյուրոն լուրջ աշ-



խատանք է կատարում նաև ֆաբրիկայում ցուցադրական ագիտացիայի վիճակը բարելավելու ուղղությամբ։ Վերջերս ագիտկոլեկտիվի նիստում ցուցադրական ագիտացիան ավելի նպատակասլաց դարձնելու վերաբերյալ իրենց գործնական առաջարկություններով հանդես եկան մի շարք ագիտատորներ։ Ագիտկոլեկտիվի հենց այդ նիստում էլ կատարեցինք աշխատանքի բաժանում, և ագիտատորները անցան գործի։ Այժմ ֆաբրիկայի աչքի ընկնող տեղերում փակցված են 30 հատ լոզունգներ, կոչեր և պլակատներ։ Գործարանի մուտքի մոտ փակցված է գեղարվեստորեն ձևավորված «Հումքի խնայողությամբ և որակական բարձր ցուցանիշներով դիմավորենք ՍՄԿՊ 20-րդ համագումարը» լոզունգը։ Մեկ ուրիշ տեղ փակցված են՝ «Ուսումնասիրենք և արտադրության մեջ ներդնենք առաջավորների փորձը», «Պայքարիր հումքի, էլեկտրաէներգիայի, վառելանյութի և օժանդակ նյութերի խնայողության համար», «Ռացիոնալ օգտագործիր աշխատանքային օրը» կոչերը և այլն։

Պարտկազմակերպության բյուրոն հատուկ ուշադրություն է դարձնում ագիտատորների քաղաքական և կուլտուրական աճի վրա։ Ագիտատորների համար հաճախակի կազմակերպվում են տարբեր թեմաններով զեկուցումներ։

# ԻՆՉՊԵՍ ԵՄ ԱՊԱՀՈՎԵԼ ԽԱՂՈՂԻ ԲԱՐՁՐ ԲԵՐՔԸ

Արտաշատի շրջանի Գետաշեն գյուղի Ստալինի անվան կոլտնտեսության դաշտավարական № 3 բրիգադայի բրիգադիր, Սոցիալիստական Աշխատանքի Հերոս Դ. Մանուկյանի պատմածը.

*Մեր կոլտնտեսության եկամուտը ներկայումս անցնում է երեք միլիոն ռուբլուց։ Եկամտի մեծ մասը (երկու միլիոն ռուբլի) ստանում ենք 90 հեկտար այգիներից՝ դրանց խնամքը լավագույն ձևով կազմակերպելու շնորհիվ։ Անցյալ տարի միայն իմ բրիգադան 15 հեկտար այգիներից կոլտնտեսության պահեստ հանձնեց 2.000 ցենտներ առաջին տեսակի խաղող, պլանով նախատեսված 1.275 ցենտների դիմաց, կամ յուրաքանչյուր հեկտարից՝ 130 ցենտներ, պլանային 85 ցենտների փոխարեն։ Իսկ առանձին օղակներ, ինչպես, օրինակ, Մարուսյա Սուքասյանի օղակը, հեկտարից ապահովեց 170 ցենտներ բերք։*

*Մենք այդ հաջողություններին հասանք ա-*



*մենից առաջ այն բանի շնորհիվ, որ ժամանակին ու ճշտորեն կիրառեցինք ագրոկանոններով նախատեսված միջոցառումները։*

*Այս տարի նույնպես հույս ունենք, որ խաղողի բարձր բերք կստանանք։ Այդ նպատակին հասնելու համար արդեն շատ բան է արված։ Բարձր բերք ստանալու հիմքերը մենք դրել ենք դեռ անցյալ տարվա բերքահավաքից անմիջապես հետո։*

*Այգիների թաղը կատարեցինք ժամանակին և բարձր որակով։ Սեփական փորձից ելնելով և հաշվի առնելով այն հանգամանքը, որ իմ բրիգադայի այգիները, մյուսների հետ համեմատած, գտնվում են բարձրադիր վայրերում՝ լեռների լանջին, որտեղ հողի շեկ-ավազային կառուցվածքն իր մեջ վատ է պաշտպանում խոնավությունը և վազերը ամեն րոպե կարող են չորանալ, այգեթաղից 15—20 օր առաջ ամբողջ տարածությունը կրկին անգամ ջրեցինք և թաղեցինք։ Երբ եղանակներն սկսեցին տաքանալ և հողի ջերմությունը հասավ 10—12 աստիճանի, սկսեցինք այգեբացը։ Այդ արդեն մարտ ամսվա սկզբներին էր։*

*Ձմռան քնից նոր արթնացող վազերի ճյուղերին վնասվածքներ չպատճառելու նպատակով այգեբացը կատարեցինք սովորական փայտյա թիերով, իսկ առանձին մասեր, ո-*

րոնք ավելի խորն էին թաղված՝ բացեցինք բահերով։ Բահով աշխատողներին հանձնարարվեց, մատերը դուրս հանելու հետ միաժամանակ, վազերի բնի շուրջը փորել 20—25 սանտիմետր խորությամբ։ Դրա նշանակությունն այն է, որ բնի շուրջը հավաքված հողը ետ տալու շնորհիվ մենք նախապես նպաստում ենք էտի աշխատանքների թեթևացմանը, այսինքն՝ պայմաններ ենք ստեղծում վազերը կանոնավոր ձևով էտելու, չորուկներից, բնարմատներից ու ավելորդ մասերից մաքրելու համար։ Կարճ ժամկետում այգեբացի աշխատանքներն ավարտելուց հետո սկսեցինք այգեէտը։ Էտելու գործը հանձնարարվեց ավելի փորձառու կոլտնտեսականներին։ Հաշվի առնելով յուրաքանչյուր վազի առանձնահատկությունները, նրա ուժը, էտելիս մատերի աչքերը թողնում էինք շատ կամ քիչ։ Այսպես, օրինակ, սև Կախեթի վազերը էտելիս, թողնում էինք 3—5 աչք, իսկ սպիտակ խաղողի վազերինը՝ (մսխալի, ոսկեհատ, Արարատի և այլն) 5—6, անգամ՝ 7 աչք։ Էտելու ժամանակ խնամքով հեռացնում էինք չորուկները, փթած մասերը և այլն։ Արքատը այգիներից հեռացնելուց անմիջապես հետո, ձեռնամուխ եղանք այգեփորի աշխատանքներին։ Փորը կատարում էինք բահերով, 25—30 սանտիմետր



խորությամբ։ Յուրաքանչյուր երեք փորողին ամրացվել էր երկու հոգի, որոնցից մեկը զբաղվում էր վազերը բռնելով, իսկ մյուսը՝ արմատահան արված մոլախոտերը հավաքելով ու այգամիջյան ճանապարհի վրա դարսելով։ Փորելիս հաշվի էինք առնում այնպիսի կարևոր հանգամանքներ, ինչպիսիք էին՝ օրինակ, վազերի բների շուրջը բացելը, մակերեսային արմատների հեռացնելը, չորացած մասերից ազատվելը, վազերի համար առատ խոնավություն, լույս, օդ ու ջերմություն ապահովելը և այլն։

Սույն թվականի մայիսի 8-ին տեղի ունեցած անակնկալ ցրտահարության հետևանքով իմ բրիգադայի այգիները նույնպես բավականաչափ տուժեցին։ Տարեսկզբին պլանով նախատեսված բերքատվությունը վերականգնելու նպատակով, ցրտահարությունից անմիջապես հետո, սկսեցինք այգիների պարարտացման աշխատանքները։ Յուրաքանչյուր հեկտարի վրա շաղ տվեցինք 300 կիլոգրամ ամյակային սելիտրա և 300—500 կիլոգրամ սուպերֆոսֆատ։ Որպեսզի պարարտանյութը շուտ ներծծվեր հողի մեջ և իր դրական արդյունքը տար, պարարտացնելուն զուգահեռ կամ նրանից մեկ—երկու օր հետո այգիները ջրեցինք։ Շուտով վազերն սկսեցին

*փարթամորեն աճել ու տերևակալել։ Վազերը զանազան տեսակի հիվանդություններից զերծ պահելու նպատակով մայիսի սկզբներից այգիները սրսկեցինք բորդոյան հեղուկով։ Սրսկումը կրկնեցինք 3 անգամ, 100 լիտր ջրի հետ խառնելով մեկ կիլոգրամ պղնձարջասպ և մեկ կիլոգրամ չհանգած կիր։ Օիդիում հիվանդության դեմ պայքարեցինք փոշոտման միջոցով, մեկ հեկտարի վրա շաղ տալով 25—30 կիլոգրամ ծծումբ, իսկ ողկույզակերի դեմ՝ ԴԴՏ-ի նույն քանակի փոշիով։ Այդ աշխատանքներն ավարտելուց հետո, ըստ պահանջի. այգիները ջրեցինք 4—5 անգամ։ Սակայն արվածը դեռ քիչ էր։*

*Հետագա հիվանդությունների դեմ վազերի դիմադրողականությունը բարձրացնելու նպատակով, բրիգադայի բոլոր այգիները ժամանակին մեկ անգամ ևս փոշոտեցինք ծծմբով։ Վստահ կարող եմ ասել, որ այս տարի, չնայած վազերի ցրտահարությանը, իմ բրիգադան 15 հեկտար տարածության յուրաքանչյուր հեկտարից կոլտնտեսության պահեստին կհանձնի 130 ցենտներ միջին բերք, որը 45 ցենտներով ավելի է լինելու պլանով նախատեսվածից։*

---



# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

## 1. ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄԵԾ ՌԵՎՈԼՅՈՒՑԻԱՅԻ 38 ՏԱՐԻՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ


Վ. Ի. ԼԵՆԻՆ—Հոկտեմբերյան ռևոլյուցիայի չորսամյա տարեդարձի առթիվ, *Երկեր, հատոր 33, էջ 37—48, Հայպետհրատ, 1952։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Պրոլետարիատի խնդիրները մեր ռևոլյուցիայում, Երկեր, *հատոր 24, էջ 49—93, Հայպետհրատ, 1951։*

Վ. Ի. ԼԵՆԻՆ—Ի՞նչ է Սովետական իշխանությունը, *Երկեր, հատոր 29, էջ 295—296, Հայպետհրատ, 1951։*

Ի. Վ. ՍՏԱԼԻՆ—Հոկտեմբերյան ռևոլյուցիայի միջազգային բնույթը, *Երկեր, հատոր 10, էջ 271—284, Հայպետհրատ, 1949։*

Սովետական Միության Կոմունիստական պարտիայի հիսուն տարին *(1903—1953), Հայպետհրատ, 1953։*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ—Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության

կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, *զեկուցում ՍՄԿԿ Կենտրոնական Կոմիտեի պլենումում, 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

## 2. ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՊԱՇՏՊԱՆՆ Է ԱՄԲՈՂՋ ԱՇԽԱՐՀՈՒՄ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ—Չորս տերությունների կառավարությունների ղեկավարների ժնևի խորհրդակցության արդյունքները, *զեկուցում ՍՍՌՄ Գերագույն Սովետի երրորդ սեսիայում 1955 թ. օգոստոսի 4-ին, տպագրված «Ս. Հ.»-ի նույն թվականի օգոստոսի 5-ի համարում։*

ԵԶՐԱՓԱԿԻՉ ԿՈՄՅՈՒՆԻԿԵ— Սովետական Միության և Գերմանական Ֆեդերալ Ռեսպուբլիկայի Կառավարական դելեգացիաների բանակցությունների արդյունքների մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի սեպտեմբերի 14-ի համարում։*

ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆ—Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Ֆինլանդական Ռեսպուբլիկայի միջև բարեկամության, համագործակցության ու փոխադարձ օգնության վերաբերյալ 1948 թվականի ապրիլի 6-ի պայմանագրի գործողության ժամկետը երկարաձգելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի սեպտեմբերի 20-ի համարում։*



ԵԶՐԱՓԱԿԻՉ ԿՈՄՅՈՒՆԻԿԵ—Սովետական Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի բանակցությունների մասին, *տպագրված «Ս. Հ»-ի 1955 թվականի սեպտեմբերի 21-ի համարում։*

ՊԱՅՄԱՆԱԳԻՐ— Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության և Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի հարաբերությունների մասին, *տպագրված «Ս. Հ»-ի 1955 թվականի սեպտեմբերի 21-ի համարում։*

Ընկերներ Ն. Ա. Բուլգանինի և Ն. Ս. Խրուշչևի զրույցը Յապոնիայի պառլամենտական դելեգացիայի հետ, *1955 թ սեպտեմբերի 21-ին, տպագրված «Ս. Հ.»-ի սեպտեմբերի 24-ի համարում։*

ՍՍՌՄ Մինիստրների Սովետի նախագահ Ն. Ա. Բուլգանինի նամակը Ամերիկայի Միացյալ Նահանգների պրեզիդենտ Դուայտ դ. Էյզենհաուերին, *տպագրված «Ս. Հ»-ի 1955 թվականի սեպտեմբերի 25-ի համարում։*

Վ. Մ. ՄՈԼՈՏՈՎԻ ելույթը ՄԱԿ-ի Գլխավոր Ասամբլեայում 1955 թվականի սեպտեմբերի 23-ին, *տպագրված «Ս. Հ.»-ի սեպտեմբերի 25-ի համարում։*

Ապահովել ժողովուրդների անվտանգությունը և նրանց վստահությունը վաղվա օրվա նկատմամբ: *«Պրավդա»-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի սեպտեմբերի 27-ի համարում։*

## 3. Ի ՊԱՏԻՎ ՍՄԿՊ 20-ՐԴ ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ԼԱՅՆՈՐԵՆ ԾԱՎԱԼԵՆՔ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, *Հայպետհրատ 1955։*

Դեպի Սովետական Միության Կոմունիստական Պարտիայի 20-րդ համագումարը, «Պրավդա»-ի հուլիսի 18-ի առաջնորդողը, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 19-ի համարում։*

## 4. ԲԱՐՁՐ ԿԱԶՄԱԿԵՐՊՎԱԾՈՒԹՅԱՄԲ ԱՆՑԿԱՑՆԵՆՔ ԲԱՄԲԱԿԻ ԲԵՐՔԱՀԱՎԱՔԸ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

ՍՄԿՊ Կենտկոմի պլենումի որոշումը գարնանացանի արդյունքների, ցանքերի խնամքի, բերքահավաքի անցկացման մասին և գյուղատնտեսական մթերքների մթերումների 1955 թվականի պլանի կատարումն ապահովելու մասին, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հուլիսի 15-ի համարում։*



Հայաստանի ԿՊ Կենտկոմում և Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետում, *տպագրված «Ս. Հ.»-ի 1955 թվականի հոկտեմբերի 2-ի համարում։*

Գյուղատնտեսական աշխատանքների օրացույց, *տպագրված «Հայաստանի կոլտնտեսական» ամսագրի 1955 թվականի № 9-ում, էջ 56։*

## 5. ԵՐԿՐԻՆ ՏԱՆՔ ԱՎԵԼԻ ՇԱՏ ԵՎ ԱՎԵԼԻ ԲԱՐՁՐՈՐԱԿ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԱՐՏԱԴՐԱՆՔ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումի որոշումը *ընդունված 1955 թվականի հուլիսի 11-ին ընկ. Ն. Ա. Բուլգանինի զեկուցման առթիվ, Հայպետհրատ, 1955.*

Ն. Ա. ԲՈՒԼԳԱՆԻՆ— Արդյունաբերության հետագա վերելքի, տեխնիկական պրոգրեսի և արտադրության կազմակերպումը բարելավելու խնդիրների մասին, *զեկուցում ՍՄԿՊ Կենտրոնական Կոմիտեի պլենումում 1955 թվականի հուլիսի 4-ին, Հայպետհրատ, 1955։*

Ռեսպուբլիկայի արդյունաբերության հետագա վերելքի համար, *«Ս. Հ.»-ի առաջնորդողը, տպագրված 1955 թվականի օգոստոսի 27-ի համարում։*

---

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

# ԻՆՉ ԿԱՐԴԱԼ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ՎԵՐԱԲԵՐՅԱԼ

Պրոֆ. Գ. Աղաջանյան.— *Եգիպտացորեն։ Հայպետհրատ, 1955, 49 էջ, տիրաժ 3.000, գինը 50 կոպեկ։*

Գրքույկը բացվում է ընդարձակ առաջաբանով, որի մեջ հեղինակը կանգ առնելով եգիպտացորենի ժողովրդատնտեսական մեծ նշանակության վրա, ընթերցողին նախապես ծանոթացնում է այդ կուլտուրայի հետ և բացատրում, թե նրա հատիկից որքա՜ն համեղ և բազմատեսակ սննդամթերքներ կարելի է պատրաստել։ Այդ նույն, ներածական բաժնում կանգ առնելով եգիպտացորենի մեկ այլ, ոչ պակաս կարևոր հատկության վրա, մեր կոլտնտեսություններին և սովխոզներին խորհուրդ է տալիս է՛լ ավելի ընդարձակելու եգիպտացորենի տակ դրվող ցանքատարածությունները՝ անասուններին առատ և հյութալի կերով ապահովելու նպատակով։ Ներածականի վերջում հեղինակը մանրակրկիտ կանգ է առնում եգիպտացորենի զարգացման ճանապարհին տարբեր ժամանակներում ու հողակլիմայական տարբեր պայմաններում Հայաստանի գիտնականների կողմից կատարված բազմաթիվ օգտակար փորձերի վրա, որոնցից շատերը ներկայումս արժանի են լուրջ ուսումնասիրության։



Ներածականից հետո գրքույկի առանձին գլուխներում պատմվում է ջրովի և անջրդի պայմաններում եգիպտացորենի բերքատվության, նրա բուսաբանական հատկանիշների, բազմազան սորտերի և այդ սորտերից յուրաքանչյուրի առանձնահատկությունների, հիբրիդային սերմեր ստանալու եղանակների և այլ հարցերի մասին։ Հետագա գլուխներում պրոֆ. Աղաջանյանը համոզիչ փաստերով ու մատչելի լեզվով բացատրություն է տալիս, թե ինչպե՞ս կատարել եգիպտացորենի ցանքի տակ դրվող հողի ընտրությունը, ինչպե՞ս և ի՞նչ քանակությամբ զանազան տեսակի պարարտանյութեր մտցնել եգիպտացորեն ցանված հողամասում, տարվա ու մշակության որ ժամանակ, ինչպե՞ս և ինչպիսի՞ գործիքներով կատարել հողի մշակությունը։ Գրքույկի վերջին մասում, ուր խոսվում է եգիպտացորենի սերմի պահպանման, ցանքի ձևերի, խնամքի կազմակերպման և բերքահավաքի մասին, հատկապես եգիպտացորենի մշակությամբ զբաղվող ընթերցողը իրեն համար շատ ուսանելի բան կարող է քաղել այդ աշխատությունից։ Նյութի վերաբերյալ գրքույկում զետեղված բազմաթիվ նկարները ավելի են նպաստում գրքույկի մատչելիության և բարձրացնում նրա արժեքավորությունը։

Վ. Գ. Աղաբաբյան.— *Մերձարաքսյան հարթավայրի աղակալած հողերը և գյուղատնտեսական բույսեր աճեցնելու հնարավորությունները։ Հայկական ՍՍՌ ԳԱ հրատարակություն, 1955, 41 էջ, տիրաժ 1.000, գինը 45 կոպեկ։*

*Այս գրքույկը, որը լույս է տեսել Հայկական ՍՍՌ Գիտությունների Ակադեմիայի խմբագրական-հրատարակչական խորհրդի որոշմամբ, իր ներծական բաժնում բացատրություն է տալիս, թե ո՞ր հողերին ենք մենք անվանում աղակալած հողեր և ինչո՞ւ։ Ապա ՍՄԿՊ 19-րդ համագումարի և պարտիայի Կենտրոնական Կոմիտեի որոշումների լույսի տակ հեղինակը առաջ է քաշում աղակալած հողերի յուրացման պրոբլեմը Հայաստանում։*

*Գրքույկի առանձին գլուխներում մեկնաբանվում են գիտական արժեք ներկայացնող այնպիսի ակտուալ հարցեր, ինչպիսիք են, օրինակ, ցամաքային պայմաններում աղակալած հողերի առաջացման, աղուտների և ալկալի հողերի բնորոշ առանձնահատկությունների ու նրանց քիմիական ու ֆիզիկական կազմի և այլ հարցերը։*

*Խոսելով թաց, փխրուն, կեղևային և ալկալիացած մորֆոլոգիական հատկանիշներ ունեցող հողերի մասին, հեղինակը նշում է, թե դրանցից յուրաքանչյուրը ինչպես է ազդում տարբեր տեսակի կուլտուրական բույսերի և խոտաբույսերի վրա և աղային ինչպիսի քանակություն է հարկավոր այդ բույսերի նորմալ զարգացման համար։ Գրքույկում մեջ են բերվում նաև այդ բնագավառում գիտահետազոտական աշխատանքով զբաղվող Սովետական Միության և արտասահմանյան երկրների բազմաթիվ գիտնականների անուններն ու նրանց կատարած փորձերը։*

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### ТЕМЫ ДЛЯ БЕСЕД



### ИЗ ОПЫТА АГИТАЦИОННОЙ РАБОТЫ



### ИЗ ОПЫТА ПЕРЕДОВИКОВ



### В ПОМОЩЬ АГИТАТОРАМ





Խմբագիր՝ ԳՐ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## ԲԱՑՎԱԾ Է
## „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի

1955 թվականի
հոկտեմբեր, նոյեմբեր և դեկտեմբեր
ամիսների

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ*

3 ամիսը— 3 ռ.,
1 համարը—50 կոպեկ:

«ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ»

Отдел Пропаганды и агитации
ЦК КП Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 19 1955 г.

*ՎՖ 12550 Պատվեր 848 Տիրաժ 8600*

*ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8։*

*Գինը 50 կոպ.։*